Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 14 ՀՈՒԼԻՍ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:

---



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԾՈՎԱՅԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՊԱՀԱՊԱՆԸ

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Պահեստի գեներալ-մայոր

*Հուլիսի 27-ին սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը նշում են ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը: Տրադիցիոն տոն դարձած այդ օրը սովետական մարդիկ հանրագումարի են բերում սոցիալիստական Հայրենիքի ծովային սահմանների պաշտպանության ամրապնդման ուղղությամբ կատարված աշխատանքը, նշում նավաշինության արդյունաբերության նվաճումները, ծովայինների հաջողությունները՝ ռազմական պատրաստականության և հմտության բարձրացման ասպարեզում:*

***

*Սովետական ժողովուրդը օտարերկրյա զավթիչների դեմ երկարատև և համառ պայքար է մղել մեր երկրի ծովային սահմանները*

պահպանելու համար։ Ռուս ժողովուրդը արագ կերպով ստեղծեց մի այնպիսի նավատորմ, որը ընդունակ եղավ դիմադրելու հին ծովային պետությունների ուժեղ նավատորմներին։ Ռուս ծովայինների հերոսական սխրագործությունները Գանգուտի, Գրենգամի ճակատամարտերում, նրանց պանծալի հաղթանակները Վիբորգի, Կերչի և Կորֆու կղզու, Սինոպի ճակատամարտերում, ամբողջ աշխարհում փառքի արժանացրին ռուսական ռազմա-ծովային նավատորմը։

Հայրենական նավատորմի փառապանծ անցյալը չի սպառվում միայն նրա մարտական գործերով։ Մեր ժողովուրդը օրինական հպարտության զգացումով է հիշում նաև այն ներդրումը, որ համաշխարհային գիտության մեջ կատարել են ռուս ծովագնացները։ Մեր երկրի նավատորմը անցել է փառավոր ռևոլյուցիոն ուղի։ Նրա առաջավոր մարդիկ անձնուրաց կերպով պայքարել են ցարական ինքնակալության, կապիտալիստների ու կալվածատերերի դեմ, հանուն ժողովրդի ազատության և երջանկության։ 1905—1907 թ. թ. ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակ շատ ռազմանավերում և զորամասերում նավաստիները բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ ապստամբություններ էին բարձրացնում։ Լայնորեն հայտ-



նի են նավաստիների ռևոլյուցիոն ելույթները Կրոնշտադտում, Լիբավայում, Սևաստոպոլում և Վլադիվոստոկում։ Պատմական նշանավոր իրադարձություն էր նավաստիների ապստամբությունը «Պոտյոմկին» զրահանավի վրա։

1917 թվականին, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախապատրաստման և անցկացման ժամանակաշրջանում, զինվորական նավաստիների հիմնական մասսան հաստատուն կերպով անցավ բանվոր դասակարգի և նրա Կոմունիստական պարտիայի կողմը։ Հոկտեմբերյան օրերին պարտիայի Կենտկոմի, Լենինի կոչով բալթիական նավատորմը Պետրոգրադի ապստամբներին օգնելու համար այնտեղ ուղարկեց 14 ռազմանավ և 20 հազար նավաստի։ «Ավրորա» հածանավը իր հրանոթների որոտով հայտարարեց մարդկության նոր էրայի՝ սոցիալիզմի էրայի սկիզբը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո կոմունիստական պարտիայի գլխավորությամբ մեր երկրի բանվոր դասակարգն ու գյուղացիությունը ջախջախիչ հակահարված հասցրին ինտերվենտներին և ներքին կոնտրռևոլյուցիային։ Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար ստեղծվեցին իսկական ժողովրդական զինված ուժեր՝ սովետական պետության բանակ ու նավատորմ, որոնք հե-

րոսաբար մարտնչեցին զորեղ թշնամու դեմ
և պարտության մատնեցին Անտանտի բոլոր
արշավանքները։ Ռազմա-Ծովային Նավա-
տորմը ակտիվորեն օգնում էր Սովետական
Բանակին՝ թշնամուն ջախջախելու գործում։
Քաղաքացիական պատերազմի տարիներին
պարտիայի ու կառավարության ցուցումով
ստեղծվեց մոտ 20 նավատորմիղ։ Ավելի քան
60 հազար նավաստիներ ցամաքային ռազ-
մաճակատներում կռվում էին սովետական
իշխանության համար։ Զինվորական նավա-
տիների մարտական գործերը, նրանց ակ-
տիվ մասնակցությունը Ցարիցինի և Աստ-
րախանի պաշտպանությանը, Կազանի և
Սամարայի ազատագրմանը և այլ մարտե-
րում, փայլուն էջեր հանդիսացան մեր նա-
վատորմի պատմության մեջ։

1921 թվականի մարտին պարտիայի X
համագումարը պատմական որոշում ընդու-
նեց ռազմա-ծովային նավատորմի վերաբըս-
տեղծման և ամրապնդման մասին։ Համա-
գումարի որոշումները հիմք հանդիսացան
նավերի վերականգնման, նավատորմի նյու-
թական բազայի ստեղծման, կադրերի պատ-
րաստման, նավաստիների քաղաքական և
մարտական դաստիարակության ուժեղացման
համար։

Այս խնդիրների լուծման գործում պար-



տիային անգնահատելի օգնություն ցույց տվեց լենինյան կոմերիտմիությունը, որը 1922 թվականին վերցրեց նավատորմի շեֆությունը։ Կոմերիտմիության Կենտկոմի կոչով նավաստիների ընտանիքի մեջ մտան հազարավոր կոմերիտականներ։ Արդեն 1923 թվականին նավատորմի նավաստիների 70 տոկոսը կոմերիտականներ էին։ Նրանք ակտիվ մասնակցություն ունեցան նոր նավատորմի կառուցմանը։ Ռազմա-Ծովային Նավատորմի, ինչպես և ամբողջ զինված ուժերի հետագա աճը և ամրապնդումը տեղի ունեցավ երկրի սոցիալիստական ինդուստրացման բազայի վրա։ Ծանր արդյունաբերության զարգացումը հնարավորություն տվեց ստեղծել հայրենական հզոր նավաշինություն։ Նավատորմը ամեն տարի լրացվում է բոլոր տեսակների նոր ռազմանավերով։ 1938 թվականին մենք արդեն ունեինք 4 լրիվ մարտական նավատորմներ՝ Կարմիր Դրոշի շքանշանակիր Բալթիական, Սևծովյան, Խաղաղօվկիանոսյան և Հյուսիսային, ինչպես նաև մի քանի նավատորմիկներ։ 1938 թվականին պարտիան և կառավարությունը խնդիր դրեցին ստեղծել ծովային և օվկիանոսային խոշոր նավատորմ, որը սովետական ժողովուրդը իրագործեց հաջողությամբ։ Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին ՍՍՌՄ Ռազմա-

Ծովային Նավատորմը իրենից լուրջ ուժ էր ներկայացնում։ Նա հագեցված էր ժամանակակից զենքով և տեխնիկայով, ուներ ծովային լավ պատրաստված կադրեր։

Հայրենական Մեծ պատերազմի օրերին սերտորեն համագործակցելով Սովետական Բանակի հետ, Ռազմա-Ծովային Նավատորմը տոկունորեն պաշտպանում էր իր բազաները, նրա մատույցներում ոչնչացնելով թշնամու կենդանի ուժը և տեխնիկան։ Ցամաքային զորքերի հետ միասին սևծովայինները 73 օր արիաբար պաշտպանեցին Օդեսան, պահելով հակառակորդի 18 դիվիզիաների հարձակումը։ Անմահ փառքով պսակեցին իրենց Սևաստոպոլի պաշտպանները։ Այդ քաղաքի 8-ամսյա հերոսական պաշտպանության ընթացքում թշնամին կորցրեց մինչև 300 հազար սպանված և վիրավոր սպաներ ու զինվորներ։ Ծովայինները հերոսաբար պաշտպանեցին Լենինգրադը։

Ամբողջ պատերազմի ընթացքում Բարենցի, Բալթիկ և Սև ծովերում նավատորմը ակտիվ ռազմական գործողություններ էր կատարում հակառակորդի ռազմա-ծովային ուժերը ջախջախելու ուղղությամբ։ Նա համարձակորեն էր գործում թշնամու կոմունիկացիաներում, ջրասույզ անում նրա ռազմանավերը և տրանսպորտը, ձախողելով ծո-



վով զորք, զենք, տեխնիկա, ռազմամթերք, պարենամթերք և հագուստեղեն փոխադրելու գործը։ Միաժամանակ մեր ռազմանավերը գտոն կերպով պահպանում էին իրենց ծովային հաղորդակցության ուղիները, արիաբար պաշտպանում մերձծովյան ռազմաճակատների թևերը, կրակով աջակցում ցամաքային զորքերին։

Պատմությունը չգիտեր այնպիսի բարձր մարտական ոգու, ակտիվության ու անձնազոհության օրինակներ, այնպիսի մասսայական հերոսության օրինակներ, ինչպիսին ցուցաբերեցին սովետական ծովայինները Հայրենական Մեծ պատերազմում։ Պարտիան և կառավարությունը բարձր գնահատեցին ծովայինների արիությունն ու հերոսությունը։ Նավաստիներին, ավագներին և սպաներին պատերազմի ժամանակ հանձնվել է Սովետական Միության 350 հազար շքանշան և մեդալ, 513 նավաստիներ դարձան Սովետական Միության Հերոսներ։ Մարտական օպերացիաների կազմակերպման և անցկացման ժամանակ աչքի ընկնող ծառայությունների համար նավատորմի ավելի քան 700 սպաներ պարգևատրվեցին Ուշակովի և Նախիմովի շքանշաններով։ Սովետական Միության շքանշանների արժանացան Ռազմա-Ծովային

Նավատորմի ավելի քան 200 նավեր և զորամասեր։ Իսկ 78 նավեր և զորամասեր՝ գվարդիականի կոչման։

Ծովայիններին, ինչպես և ամբողջ սովետական ժողովրդին կազմակերպում և հիտլերյան զավթիչների դեմ անձնազոհ պայքարի էր ոգեշնչում Կոմունիստական պարտիան։ Նա մարտիկներին դաստիարակում էր Հայրենիքի նկատմամբ անսահման նվիրվածության և նրա թշնամիների նկատմամբ խոր ատելության ոգով։ Նավատորմի քաղաքական օրգանները, պարտիական և կոմերիտական կազմակերպությունները հրամանատարներին օգնում էին հաջողությամբ լուծելու մարտական առաջադրանքները։ Պատերազմի ընթացքում Նավատորմի պարտիական կազմակերպությունները աճեցին երեք անգամ։ Դա իր հարազատ Կոմունիստական պարտիայի նկատմամբ ծովայինների ջերմ սիրո և նվիրվածության կենդանի վկայությունն էր։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում խաղաղ շինարարությամբ զբաղված սովետական մարդիկ կենսականորեն շահագրգռված են խաղաղությամբ։ ՍՍՌՄ-ը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները և մյուս խաղաղասեր պետությունները ակտիվորեն պայքարում են միջազգային լարվածության



թուլացման համար։ Սակայն ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստական շրջանները ձգտում են ծայրաստիճան սրել միջազգային դրությունը, աշխարհը պահել «պատերազմի եզրին»։ Սպառազինությունների կատաղի մրցավազքը վկայում է այն մասին, որ իմպերիալիստները ուժեղ թափով պատերազմի են նախապատրաստվում ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների դեմ։ Այդ պատճառով էլ պարտիան, կառավարությունը և մեր ամբողջ ժողովուրդը անխոնջ կերպով ամրապնդում են սովետական պետության պաշտպանունակությունը և հատկապես բարձրացնում Ռազմա-Ծովային Նավատորմի մարտական հզորությունը։ Ներկայումս Ռազմա-Ծովային Նավատորմը ունի բոլոր տեսակի ժամանակակից ռազմանավեր, որոնք զգալիորեն գերազանցում են պատերազմի ժամանակվա ռազմանավերին։ Նա ունի նաև ժամանակակից ծովային ավիացիա, որը հագեցված է ռեակտիվ ինքնաթիռներով և հզոր ցամաքային հրետանիով։ Զինված ուժերի մյուս տեսակների հետ միասին Նավատորմը ընդունակ է լուծելու Սովետական պետության ծովային սահմանների պաշտպանության մարտական խնդիրները։

Նավատորմն այժմ ունի բարձրորակ սպաներ, որոնք գիտեն և սիրում են իրենց գործը,

նվիրված են Հայրենիքին, պարտիային և կառավարությանը, կարողանում են լավ ուսուցանել և դաստիարակել նավաստիներին և ավագներին։ Մեր ռազմանավերը մի շարք արտասահմանյան արշավներ ձեռնարկեցին։ Նրանք բարեկամական հրավերով եղան Անգլիայի, Նիդերլանդների, Դանիայի, Նորվեգիայի, Շվեդիայի, Հարավսլավիայի, Ալբանիայի և Չինաստանի նավահանգիստներում։ Ամենուրեք Սովետական ծովայինները ցուցադրեցին գերազանց վարքագիծ, իրենց գործի հիանալի իմացություն, ծովային բարձր կուլտուրա, կարգապահություն և կազմակերպվածություն։

Խաղաղ ստեղծագործ աշխատանքով զբաղված սովետական ժողովուրդը կարող է համոզված լինել, որ ծովայինները, ինչպես և սովետական բոլոր մարտիկները պատրաստ են կատարելու Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության յուրաքանչյուր առաջադրանքը հայրենիքի պետական շահերի պաշտպանության գործում։

---



# ԱՌԱՏ ԿԵՐ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻՆ

ՀՐ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ և Գյուղատնտեսության մինիստր

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում անասունների գլխաքանակը, ինչպես նաև անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու հիմնական միջոցառումը հանդիսանում է կայուն կերի բազայի ստեղծումը և հատկապես մսուրային շրջանի համար մեծ քանակությամբ բարձրորակ կերի կուտակումը։

Ընթացիկ տարում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում պետք է հնձվի մոտ 150 հազար հեկտար բնական և 75 հազար հեկտար ցանովի խոտհարքներ։

Մսուրային շրջանում անասունների խնամքը լավագույն ձևով կազմակերպելու նպատակով միայն կոլտնտեսություններում պետք է կուտակվի 500 հազար տոննա խոտ,

400 հազար տոննա ծղոտ, 460 հազար տոննայից ավելի սիլոս և մեծ քանակությամբ խտացրած ու մյուս տեսակի կերեր։

Այժմ ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում կերի կուտակման համար ամենապատասխանատու շրջանն է։ Ամենուրեք մասսայական կարգով սկսվել է ինչպես ցանովի, այնպես էլ բնական խոտհարքների հունձը և կերերի սիլոսացման աշխատանքները։ Տեղերում պետք է ամենայն խնամքով և ժամանակին ավարտել խոտհնձի, կերերի սիլոսացման և ընդհանրապես կերերի կուտակման աշխատանքները։

Խոտհնձի աշխատանքներին զուգընթաց պետք է կազմակերպել խոտի չորացման, փոխադրման և անասունների ձմեռելու վայրում կերերի կուտակման աշխատանքները, թույլ չտալով հնձի և փոխադրումների միջև խզումներ։

Կերերի կուտակման աշխատանքների հաջող և ժամանակին ավարտումը սերտ կերպով պայմանավորված է նրանով, թե յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում ինչպես են տեղաբաշխված աշխատավոր ձեռքերը դաշտավարական և կերհայթայթման բրիգադներում։

Բոլոր բրիգադները պետք է ապահովված



լինեն անհրաժեշտ թվով հնձվորներով, հավաքողներով, փոխադրողներով՝ ըստ նրանց ամրացված խոտհարքի տարածությունների և պատրաստվող սիլոսի քանակի։

Խոտի հունձը պետք է սկսել բուսական կազմի հիմնական տեսակների մասսայական ծաղկման սկզբին, քանի որ ուշացրած հնձի ժամանակ պակասում է խոտի բերքի մի զգալի մասը, ինչպես նաև կուտակվող խոտի մեջ նվազում են սննդարար նյութերը, ընկնում է նրա որակը։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները բոլոր միջոցներն ու հնարավորությունները պետք է օգտագործեն որպեսզի ընթացիկ տարում կատարվեն և գերակատարվեն կերերի կուտակման պլանները։ Շրջանային գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունները և սովխոզները խոտի հունձը պետք է կատարեն ինչպես ցանովի բազմամյա և միամյա, այնպես էլ բնական խոտհարքային տարածություններում, անտառային բացատներում, երկաթուղու և ճանապարհների օտարացման շերտերում, միջնակներում, ձորերում ու բոլոր այն վայրերում, որտեղից կարելի է խոտ և սիլոսի մասսա հավաքել։

Խոտհնձի և կերերի սիլոսացման, ինչպես

նաև ընդհանրապես կերերը կուտակելու աշխատանքներում անհրաժեշտ է լրիվ չափով ընդգրկել անասնապահական ֆերմաներում աշխատող կոլտնտեսականներին։ Ֆերմաների աշխատողներն իրենք ավելի շատ են շահագրգռված, որպեսզի ընթացիկ տարում ավելի մեծ քանակով և բարձրորակ խոտ ու սիլոս կուտակվի։

Այժմ, մեր կոլտնտեսություններն ունեն իրենց սեփական տեխնիկան՝ մեքենաները և կցվող գործիքները, մեծ հնարավորություններ ունեն ինչպես խոտհնձի և հավաքի, նույնպես և կերերի սիլոսացման աշխատանքների պրոցեսներր առավելագույն չափով մեքենայացնելու։

Ռեսպուբլիկայի անասնապահության կերի բազայում խոշոր տեղ են գրավում ցանովի խոտաբույսերը՝ կորնգանը, առվույտը և մյուս տեսակները։ Նշված խոտաբույսերը սննդանյութերի պարունակությամբ անփոխարինելի են և տալիս են բարձրորակ խոտի մեծ բերք։

Արարատյան հարթավայրի և նախալեռնային գոտու մի շարք շրջաններում խոտի պաշարների հիմնական մասը կուտակում են ցանովի խոտաբույսերից, հետևապես ցանովի խոտաբույսերի ցանքերում խնամքի



և առանձնապես ջրման աշխատանքները պետք է կազմակերպել այնպես, որ առվույտի ցանքերը հնձվեն ոչ պակաս քան 5 անգամ, իսկ ոռոգվող կորնգանները և բնական խոտհարքները՝ ոչ պակաս երկու անգամ։

Ապարանի շրջանի Վարդենուտի, Մարտունու շրջանի Վարդաշենի, Վարդենիկի, Ստեփանավանի շրջանի Կիրովի, Կաթնաղբյուրի, Բասարգեչարի շրջանի Կարաիմանի, Ծիշկայայի, Գորիսի շրջանի Տաթևի, Ազատաշենի, Հոկտեմբերյանի շրջանի Փշատավանի, Ջանֆիդայի և շատ ուրիշ կոլտնտեսություններ, ինչպես բնական, նույնպես և ցանովի խոտհարքներում խնամքի ու ագրոտեխնիկական միջոցառումները ժամանակին կիրառելու շնորհիվ մեծ տարածությունների վրա բնական խոտհարքի ամեն մի հեկտարից ստանում են 20—25 ցենտներ, առվույտից՝ 120 ցենտներից ավելի և կորնգանից՝ 60 ցենտներ խոտի բերք։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովխոզների մեծ մասը բոլոր հնարավորություններն ունեն աշխատանքները այնպես կազմակերպելու, որպեսզի նրանք ևս հասնեն կերերի կուտակման բարձր ցուցանիշների։

Խոտհնձի և հացահատիկային կուլտուրաների բերքահավաքին զուգընթաց անհրա-

ժեշտ է կազմակերպել խոտի և ծղոտի փոխադրումը անասունների ձմեռելու վայրերում և այն կանոնավոր դիզել ու անկորուստ պահպանել։

Կաթի արտադրությունն ավելացնելու գործում, խոշոր տեղ է գրավում կովերին սիլոսով առատորեն կերակրելը։ Անհրաժեշտ է, որ կոլտնտեսություններում և սովխոզներում ընթացիկ տարում յուրաքանչյուր կովի համար կուտակվի 5—6 տոննա և ավելի բարձրորակ սիլոս։

Մասնագիտական հանձնաժողովների միջոցով պետք է ստուգման ենթարկել բոլոր տեսակի սիլոսային կառուցվածքները և պարզել նրանց պիտանիության վիճակը, պարզել տարողությունը։ Անհրաժեշտ դեպքում կատարել վերանորոգում։

Կերերի սիլոսացման նպատակով լայնորեն պետք է օգտագործել վայրի բուսականությունը, բոստանա-բանջարանոցային կուլտուրաների մնացորդները, ճակնդեղի և կարտոֆիլի փրերը և այլն։

Կոլտնտեսություններում և սովխոզներում սիլոսի մասսայի մեծ բերք ստանալու նպատակով անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել եգիպտացորենի, ինչպես նաև մյուս սիլոսային կուլտուրաների ցանքերի



մշակության վրա։ Այդ կապակցությամբ սիլոսի մասսայի լրացուցիչ ռեսուրսներ ստեղծելու նպատակով անհրաժեշտ է, որ ընթացիկ տարում կոլտնտեսություններում լայն չափով ներդրվի եգիպտացորենի և այլ կուլտուրաների խոզանացանը, պետք է այժմվանից նախապատրաստական աշխատանքներ կազմակերպել այդ ուղղությամբ, այն հաշվով, որ այդ ցանքերը ավարտվի ոչ ուշ քան հուլիսի 20—25-ը։

Այն շրջաններում, որտեղ կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով ընթացիկ տարում կերային կուլտուրաները ուրոշ չափով տուժել են, այդպիսի շրջանների կոլտնտեսություններում պետք է մաքսիմալ չափով մոբիլիզացնել առկա հնարավորությունները կերերի կուտակման ուղղությամբ։

Կերերի կուտակման աշխատանքներում կոլտնտեսությունների անձնական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ է յուրաքանչյուր կոլտնտեսությունում, խոտի բերքահավաքի աշխատանքներում զբաղված կոլտնտեսականներին, բացի աշխօրերով վարձատրելուց, տալ նաև լրացուցիչ վարձատրություն նատուրայով։ Կոլտնտեսություններում անհրաժեշտ է լրացուցիչ վարձատրության հար-





*ցը քննարկել կոլտնտեսականների ընդհանուր ժողովում, ելնելով տնտեսության ռեալ հնարավորություններից։*

*Լրացուցիչ վարձատրությունը կնպաստի կոլտնտեսություններում ժամանակին և բարձր որակով կատարելու խոտի բերքահավաքը և կերերի սիլոսացումը, ինչպես նաև հացահատիկային կուլտուրաների ծղոտի հավաքման աշխատանքներին։*

*Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները խոտհնձի և սիլոսի պատրաստման աշխատանքները լավագույն ձևով կազմակերպելու, տնտեսության ներքին ռեզերվները լրիվ մոբիլիզացնելու միջոցով հնարավորություն կստեղծեն 1958—1959 թվականների անասունների մսուրային շրջանի համար կուտակելու մեծ քանակությամբ կոշտ և հյութալի, ինչպես նաև խտացրած կերեր որը և կնպաստի անասնագլխաքանակի ավելացմանն ու նրա մթերատվության բարձրացմանը։*

---

# ՆՈՐՈԳՄԱՆ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԿԱՅԱՆԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

*Գործողության մեջ է մտել ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի՝ «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու մասին» պատմական որոշումը։*

*Արտաշատի շրջանի երկու ՄՏ կայանների բազայի վրա ստեղծվել է նորոգման-տեխնիկական կայան, որն արդեն սկսել է իր գործունեությունը։*

*Աշխատանքի առաջին իսկ օրվանից նորոգման-տեխնիկական կայանը սկսեց հոգ տանել, որպեսզի շրջանի 43 կոլտնտեսությունները ժամանակին ստանան տեխնիկական անհրաժեշտ օգնություն և ապահովված լինեն վառելանյութով, պահեստամասերով և պարարտանյութերով։*

*ՄՏ կայանները վերակազմելիս տրակտորները 50 տոկոս, իսկ մյուս մեքենաներն ու գործիքները 70 տոկոս զեղչով վաճառվեցին*

կոլտնտեսություններին։ Այսպիսով շրջանի կոլտնտեսությունները գնեցին 145 տրակտոր և 424 զանազան մեքենաներ ու գյուղատընտեսական գործիքներ։ ՆՏԿ-ի տրամադրության տակ է մնացել 15 տրակտոր, 4 կոմբայն, 2 կալսիչ և մեկ էքսկավատոր։

Այժմ ՆՏԿ-ին կից գործում է միայն մեկ նորոգման արհեստանոց։

Արհեստանոցին կից կազմակերպված են երեք վերանորոգող բրիգադներ, որոնք ժամանակին վերանորոգում են կոլտնտեսությունների տրակտորներն ու գործիքները։

Բացի նորոգման արհեստանոցից, շրջանի կոլտնտեսություններին սպասարկում են նաև չորս շրջիկ արհեստանոցներ՝ տեղերում նորոգումներ կատարելու համար։ Օգնությունը տեղում լինում է արագ և օպերատիվ։ Այսպես, Ն. Դվինի կոլտնտեսությունում բամբակենու պլանտացիաների միջշարային մշակության ժամանակ տրակտորը հանկարծ կանգ էր առել՝ բարձրացնող և իջեցնող հարմարանքը խափանվելու հետևանքով։ Անմիջապես տեղ մեկնեց շրջիկ մեխանիկ Հ. Հովհաննիսյանը և արագորեն վերացրեց թերությունը։ ՆՏԿ-ն նույն կարգով տեխնիկական օգնություն է ցույց տվել նաև Ծաղկաշեն, Նովրուզլու, Աղամզալու, Ջաբաչլալու և մի շարք գյուղերի կոլտնտեսություններին։ Եթե ՄՏԿ-ների



ժամանակ տրակտորների և գյուղատնտեսական մյուս մեքենաների խափանումները հասնում էին 30 տոկոսի, ապա այժմ, նորոգման-տեխնիկական կայանի գործունեությունն սկսվելուց հետո, այն հասնում է հազիվ 10 տոկոսի։ Այս օրինակը ցույց է տալիս, որ գյուղատնտեսական տեխնիկան կոլտնտեսություններում ավելի արդյունավետ է օգտագործվում, ավելի խնամքով են վերաբերվում նրա նկատմամբ։

Երբ կոլտնտեսությունները ՄՏ կայաններից նոր էին գնում տրակտորներ ու մեքենաներ, կոլտնտեսությունների նախագահները շատ էին անհանգստանում նորոգումների ու պահեստամասերի ձեռք բերման մասին։ Բայց այժմ նրանք անհանգստանալու հիմք չունեն։ ՆՏԿ-ն գործնականում հիանալի օգնություն է ցույց տալիս կոլտնտեսություններին։

Կոլտնտեսությունների տրակտորները և մեքենաները տեխնիկական սարքին վիճակում պահելու գործում խոշոր աշխատանք են կատարում պետական տեխնիկական հսկիչները։ Նրանք սիստեմատիկաբար այցելում են կոլտնտեսությունները, հսկում և միաժամանակ օգնում կոլտնտեսային մեխանիզատորներին, տրակտորների տեխնիկական խը-

նամքը բարելավելու և այն արդյունավետ օգտագործելու համար։

Վերջերս ՆՏ կայանը կառուցվածքային փոփոխության ենթարկեց Նորաշեն, Ն. Դվին, Դալար, Մխչյան և Աղամզալու գյուղերի կոլտնտեսությունների թվով 15 ՆԿՈՒ—4—6 մարկայի կուլտիվատորները, որոնք այժմ շատ հաջողությամբ աշխատում են դաշտերում։

Անընդհատ բարձրանում է շրջանի ՆՏ կայանի վերանորոգման արհեստանոցի տեխնիկական կարողությունը։ Օրինակ, այնտեղ տեղադրվում են ավելի կատարելագործված հաստոցներ, բացվում են նոր արտադրական ցեխեր և այլն։

ՆՏԿ-ն կոլտնտեսություններին ապահովում է նաև ներֆերմային մեխանիզմներով։ Այդ կապակցությամբ ստեղծվել է փականագործական առանձին բրիգադա, շրջանի մի շարք կոլտնտեսություններում արդեն ավարտվել է ոչխարների էլեկտրախուզ կատարող մեխանիզմների մոնտաժումը և եղածների նորոգումը։ Այժմ ՆՏԿ-ն օգնում է կոլտնտեսություններին՝ կատարելու ոչխարների էլեկտրաագրեգատային խուզ։

Այս տարի ավելի հաջող կատարվեց հացահատիկի բերքահավաքի նախապատրաստությունը։ ՆՏԿ-ի օգնությամբ նախօրոք ախ-



տահանվեցին կոլտնտեսությունների հացահատիկների պահեստները, պատրաստվեցին կալատեղերը։

Կերի կայուն բազա ստեղծելու նպատակով ՆՏ կայանը օգնում է կոլտնտեսություններին մեքենաներով ու մեխանիզմներով։ Նրանց համար կառուցում է սիլոսի խրամատներ։ Ներկայումս կայանը իր տրամադրության տակ ունի մի շարք սիլոսահատ-ծղոտահատ մեքենաներ իրենց անհրաժեշտ պահեստամասերով։ Կայանի միջոցով կոլտնտեսություններում կառուցվելու են 1.430 խորանարդ մետր սիլոսային խրամատներ։

Պարտիայի ու կառավարության որոշման համաձայն, ՆՏԿ-ի կազմի մեջ է մտնում նյութա-տեխնիկական մատակարարման բազան, որը ինչպես ընթացիկ տարում, այնպես էլ հետագայում կոլտնտեսություններին պետք է ապահովի վառելանյութով, պահեստամասերով, բուժանյութերով, ավտոմեքենաներով և այլն։

Արտաշատի նորոգման-տեխնիկական կայանի աշխատողները բոլոր միջոցները կգործադրեն՝ պատվով ու անթերի կատարելու պարտիայի ու կառավարության կողմից իրենց առջև դրված բոլոր խնդիրները։

---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԱԼԲԱՆԻԱ

1957 թվականին Ալբանիայում արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր տարեկան պլանը կատարվել է 103,5 տոկոսով։

Արդյունաբերական արտադրանքի կարևոր տեսակների արտադրությունը բնութագրվում է հետևյալ տվյալներով. նավթ՝ 489,8 հազար տոննա, գորշ ածուխ՝ 235,7 հազար տոննա, քրոմի հանքաքար՝ 167,3 հազար տոննա, էլեկտրաէներգիա՝ 125 միլիոն կիլովատ-ժամ, ցեմենտ՝ 70,2 հազար տոննա, աղյուս՝ 67,5 միլիոն հատ, բամբակյա գործվածքներ՝ 19,3 միլիոն մետր, բրդյա գործվածքներ՝ 451 հազար մետր, կոշկեղեն՝ 635 հազար զույգ, շաքար՝ 8,9 հազար տոննա, ձիթապտղի յուղ՝ 3,2 հազար տոննա։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել երկրի արդյունաբերության առաջավոր ճյուղի՝ նավթարդյունաբերության զարգացման գործում։ Հայտնաբերվել են



նավթի և գազի նոր հանքավայրեր։ Նավթի հանույթը երկրում 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ ավելացել է 84,3 տոկոսով, բենզինի արտադրությունը՝ 226,8 տոկոսով, զտված գազոլինինը՝ 331,2 տոկոսով, նավթային բիտումինը՝ 116,7 տոկոսով։

1956 թվականի համեմատությամբ զգալիորեն աճել է նաև թեթև և սննդի արդյունաբերության մի շարք ապրանքների արտադրությունը. բամբակյա գործվածքներինը՝ 17,2 տոկոսով, բրդյա գործվածքներինը՝ 27,8 տոկոսով, ձիթապտղի յուղինը՝ 3,2 անգամ։

## ԲՈՒԼՂԱՐԻԱ

1957 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր տարեկան պլանը կատարվել է 107 տոկոսով, ըստ որում ռեսպուբլիկական արդյունաբերության գծով՝ 106 տոկոսով, տեղական արդյունաբերության գծով 103 տոկոսով և կոոպերատիվ արդյունաբերության գծով՝ 112 տոկոսով։ Արտադրության տարեկան պլանը գերակատարված է արդյունաբերական արտադրանքի նաև ուրիշ շատ տեսակների գծով։

Արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է 15 տոկոսով, այդ թվում ռեսպուբլիկական արդյունաբերության գծով՝ 12 տոկո-

սով, տեղական արդյունաբերության գծով՝ 26 տոկոսով և կոոպերատիվ արդյունաբերության գծով՝ 32 տոկոսով։

1957 թվականին Ռոդոպի լեռներում հայտնաբերվել է արճիճա-ցինկային նոր հանքավայր, որի պաշարները նախնական տվյալներով կազմում են ավելի քան 10 միլիոն տոննա։ Շահագործման է հանձնվել Ստալինի անվան ջերմաէլեկտրակայանի երկրորդ և երրորդ հերթերը՝ 50 հազար կիլովատ կարողությամբ և Բուլղարիայում ստորերկրյա «Բատակ» հիդրոէլեկտրակայանը՝ 30 հազար կիլովատ հզորությամբ։

Կառուցվել է «Ստուդենտ Կլադենեց» խոշոր ջրամբարը՝ 489 միլիոն խորանարդ մետր ջրատարողությամբ, սկսված է բալկանյան թերակղզում ամենամեծ «Մարիցա-Վոստոկ» ջերմաէլեկտրակայանի շինարարությունը՝ 300 հազար կիլովատ կարողությամբ։

Շարք է մտել մի նոր դոմենյան վառարան (տարեկան 117 հազար տոննա չուգունի արտադրողականությամբ) և մարտենյան 4-րդ վառարանը Լենինի անվան մետալուրգիական կոմբինատում։

## ՀՈՒՆԳԱՐԻԱ

Արդյունաբերական համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը 1957 թվականին 11 տոկոսով ավելի է քան 1956 թվականին և 2 տոկոսով ավելի քան 1956 թվականին։ Արդյունաբերական արտադրանքի պլանը 1957 թվականին կատարվել է 110 տոկոսով։



Մանր արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է 9 տոկոսով։

Մեքենաշինական արտադրանքը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելացել է 8 տոկոսով։ Մեծ զարգացում է ստացել շինարարական պատրաստի մասերի և երկաթբետոնային կառուցվածքների արտադրությունը։ Քիմիական արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականի համեմատությամբ ավելացել է 21 տոկոսով։

1957 թվականին թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականի արտադրանքի ծավալը գերազանցել է 26 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցի համեմատությամբ տեքստիլ արդյունաբերության արտադրանքը ավելացել է 18 տոկոսով, կաշվեղենը և մորթեղենը՝ 40 տոկոսով, փայտամշակումը՝ 25 տոկոսով։

Պարենային ապրանքների արդյունաբերությունը 1957 թվականին 6 տոկոսով ավելի արտադրանք է տվել, քան 1956 թվականին։ Մսի արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1956 թվականի համեմատությամբ ավելացել է երկու տոկոսով, պահածոներինը՝ 10 տոկոսով, շաքարինը՝ 39 տոկոսով, հրուշակեղենինը՝ 32 տոկոսով, ծխախոտինը՝ 57 տոկոսով և այլն։

## ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

*1957 թվականին արդյունաբերության արտադրանքի պլանը կատարվել է 101,6 տոկոսով։ 1956 թվականի համեմատությամբ արդյունաբերության արտադրանքի ծավալը աճել է 8 տոկոսով։*

*1956 թվականի համեմատությամբ ածխի հանույթը և էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է վեց տոկոսով, լեռնահանքային և մետալուրգիական արդյունաբերության համախառն արտադրանքը՝ 7 տոկոսով, քիմիական արդյունաբերությունը՝ 6 տոկոսով, ծանր արդյունաբերությունը՝ 7 տոկոսով, ընդհանուր մեքենաշինությունը՝ 10 տոկոսով, թեթև արդյունաբերությունը՝ 6 տոկոսով, սննդի արդյունաբերությունը՝ 7 տոկոսով։*

*Կապիտալ մեծ ներդրումներ են կատարվել մասնավորապես ածխային էներգետիկ և քիմիական արդյունաբերության մեջ։ Գորշ ածխի հանքերում 1957 թվականին տեղադրվել են 29 նոր էքսկավատորներ, որի շնորհիվ ածխի հանույթը ավելացել է 6,6 միլիոն տոննայով։ 1957 թվականին մեկ միլիարդ 544 միլիոն կիլովատ-ժամ ավելի էներգիա է արտադրվել, քան 1956 թվականին։*

---



# ԶԻՆԱԹԱՓՄԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԸ

Մ. ԿՈՏՈՎ
Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պատասխանատու քարտուղար

*Խաղաղության բարեկամները բոլոր երկրներում վաղուց պատրաստվում էին զինաթափման և միջազգային համագործակցության համաշխարհային կոնգրեսին, որը բացվեց հուլիսի 16-ին Շվեդիայի մայրաքաղաք Ստոկհոլմում։*

*Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը, հանդես գալով այդ կոնգրեսի նախաձեռնությամբ, միջազգային հասարակայնությանը, բոլոր խաղաղասեր ուժերին կոչ արեց պաշտպանել կոնգրեսի գումարման գաղափարը։ Նա հայտարարեց, որ Ստոկհոլմի առաջիկա կոնգրեսը կոչված է կարևորագույն դեր խաղալու ատոմային պատերազմի սպառնալիքը կանխելու, պետությունների*

միջև վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու գործում։

Այդպիսի պայմաններում, երբ դեռ չի վերացված ամայացնող ատոմային պատերազմի սանձազերծման վտանգը, բոլոր երկրների խաղաղության բարեկամները կոչված են ամեն ինչ անելու, որպեսզի խանգարեն պատերազմը, որպեսզի ապահովեն առանց պատերազմի խաղաղությունը։ Հենց այդ նպատակներին՝ միջազգային համագործակցության ամրապնդմանը, սպառազինության պրոբլեմի լուծմանը, «սառը պատերազմի» լիկվիդացմանը, ժողովուրդների միջև փոխըմբռնման հաստատմանն է նվիրված Ստոկհոլմի կոնգրեսը։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի նախաձեռնությունը լայն պաշտպանություն գտավ բոլոր երկրներում։ Բոլոր կոնտինենտների շատ երկրների քաղաքներում, գյուղերում հունիսի 1-ից մինչև 8-ը անցկացվեց «Խաղաղության շաբաթ»՝ նվիրված Ստոկհոլմի առաջիկա կոնգրեսին։

Ատոմային պատերազմի սպառնալիքի վերացման համար մղվող պայքարում խոշոր նշանակություն ունեն Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի վերջերս



Մոսկվայում կայացած խորհրդակցության առաջարկությունները ՆԱՏՕ-ի մասնակից երկրների հետ չհարձակման պակտ կնքելու մասին, ինչպես նաև Լեհաստանի առաջարկությունները Եվրոպայում ատոմազերծ գոտի ստեղծելու մասին։

Ամբողջ խաղաղասեր մարդկությունը մեծ շնորհակալությամբ ընդունեց Սովետական կառավարության որոշումը միջուկային զենքի փորձարկումները միակողմանիորեն դադարեցնելու մասին։

Խաղաղասեր ժողովուրդները իրենց խորին զայրույթն են հայտնում ԱՄՆ-ի և Անգլիայի քաղաքականության դեմ, որն ուղղված է միջուկային զենքի փորձարկումների շարունակմանը, միջազգային լարվածության ուժեղացմանը։ Չկա և չի կարող որևէ արդարացում լինել ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող շրջանների այն փորձերի համար, որոնց նպատակն է խանգարել բարձր մակարդակի խորհրդակցության գումարումը, որի վրա ժողովուրդները այնքան մեծ հույսեր են դընում։

Բոլոր երկրների խաղաղության կողմնակիցները իրենց առջև նպատակ են դնում՝ մերձեցնել ժողովուրդներին, ամրապնդել նրանց բարեկամությունը, որն ուղղված է խաղաղության պահպանմանը։

Այդ ազնիվ նպատակներին է ծառայում խաղաղության կողմնակիցների շարժումը ՍՍՌՄ-ում, որը հանդիսանում է խաղաղության համար համաշխարհային շարժման մի մասը։ Սովետական Միության խաղաղության կողմնակիցները բոլոր երկրների բարի կամքի տեր մարդկանց հետ միասին վճռականապես հանդես են գալիս սպառազինությունների մրցավազքի դեմ, հանուն «սառը պատերազմի» դադարեցման, անկախ քաղաքական սիստեմների տարբերության՝ բոլոր պետությունների հետ բարեկամական հարաբերությունների հաստատման։ Մեր երկրում խաղաղության պաշտպանության գործը հանդիսանում է յուրաքանչյուր սովետական քաղաքացու հարազատ գործը։ Սովետական բոլոր մարդիկ՝ բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան մեկ ցանկությամբ են տոգորված՝ պահպանել խաղաղությունը։ Նրանք լիովին հավանություն են տալիս Սովետական կառավարության քայլերին, որոնք ուղղված են միջազգային լարվածության նվազեցմանը և չվճռված բոլոր պրոբլեմների վերաբերյալ պետությունների միջև համաձայնության ձեռք բերմանը։ Սովետական մարդիկ մեծ հավանությամբ դիմավորեցին Սովետական



կառավարության միջոցառումները զինաթափման և զինված ուժերի կրճատման մասին։

ԱՄՆ-ի պրեզիդենտ Դ. Էյզենհաուերին ուղղված ուղերձում հունիսի 2-ին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովը հայտարարեց, որ եղած պայմանները թույլ են տալիս լուրջ և հեռու գնացող քայլեր ձեռնարկել ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի միջև առևտրական հարաբերությունների զարգացման ուղղությամբ, որը փոխադարձաբար օգտավետ է։ Դա կնպաստեր բոլոր երկրների միջև առևտրի նորմալացմանը և կբացեր սպառազինությունների մրցավազքի դադարեցման ուղին։ Սովետական Միությունը, սոցիալիստական լագերի երկրները ի հակակշիռ, հյուսիսատլանտյան բլոկի «եկե՛ք սպառազինվենք» լոզունգի, առաջադրեցին բոլոր ժողովուրդների համար ընդունելի «եկե՛ք առևտուր անենք» լոզունգը։

Սովետական մարդիկ, ինչպես և խաղաղության բոլոր բարեկամները ջերմորեն ողջունում են ժողովուրդների առաջիկա կոնգրեսը հանուն զինաթափման և միջազգային համագործակցության։ Մենք լավ ենք հասկանում, որ բարձր մակարդակի վրա հանդիպման նախօրյակին համաշխարհային հասա-

րակայնության կարծիքների լայն փոխանակությունը կարող է խոշոր օգուտ բերել խաղաղության գործին։

Ինչպիսի՞ հարցեր պետք է քննարկվեն կոնգրեսում։ Ատոմային սպառնալիքը, սպառազինությունների մրցավազքի դադարեցումը, միջուկային զենքի արգելումը և նրա փորձարկումների անհապաղ դադարեցումը, փոխադարձ վստահության և խաղաղ համագործակցության հաստատումը պետությունների միջև—այս և շատ այլ հարցեր, անտարակույս, կդառնան կոնգրեսի ուշադրության կենտրոնը։ Կոնգրեսի օրակարգը կորոշվի նրա մասնակիցների կողմից։ Ամենատարբեր քաղաքական և կրոնական համոզմունքների տեր մարդիկ կհավաքվեն այստեղ, որպեսզի կարծիքներ փոխանակեն ամենահրատապ հարցերի մասին և համատեղ միջոցներ մշակեն, որոնք օգնեն վերջ տալու «սառը պատերազմին» և հասնելու պետությունների միջև վիճելի հարցերի խաղաղ լուծմանը։

Համաշխարհային հասարակական կարծիքի լայն շրջանները խոշոր հետաքրքրություն են հանդես բերում Ստոկհոլմի կոնգրեսի նկատմամբ։ Այս օրերին բոլոր կողմերից լուրեր են ստացվում զինաթափման և միջազգային համագործակցության համաշխարհային կոնգրեսի նախապատրաստման համա-



ժողովրդական լայն կամպանիայի ծավալման մասին։

Կոնգրեսին պաշտպանում են ոչ միայն խաղաղության կողմնակիցների շարժմանը հարող կազմակերպություններն ու գործիչները։ Հանուն կոնգրեսի գումարման տարբեր երկրներում հանդես են եկել շատ քաղաքական և հասարակական գործիչներ, որոնք մինչ այժմ մասնակցություն չէին ունենում խաղաղության շարժմանը։ «Բարձր մակարդակի ժողովրդական ժողովի», որպիսին հանդիսանում է Ստոկհոլմի կոնգրեսը, պաշտպանության մասին հայտարարել են լորդ Բոյդ Օրրը, պրոֆեսոր Ջոն Բեռնալը, հայտնի փիլիսոփա Բերտրան Ռասսելը, Անգլիայի ձուլողների արհմիության նախագահ Ֆ. Հոլլինգսվորտը, ֆրանսիական սենատոր, դիմադրության շարժման մասնակիցների միջազգային ֆեդերացիայի փոխնախագահ Ժակ Դեբյու-Բրիդելը, Ֆրանսիայի նախկին մինիստր Ֆրանսիսկ Գեյը, գրող և փիլիսոփա Ժան-Պոլ Սարտրը, չիլիական սենատոր, 1958 թվականի ընտրությունների ժամանակ ռեսպուբլիկայի պրեզիդենտության թեկնածու Սալվադոր Ալլենդեն, Ցեյլոնի արդարադատության մինիստր դը Սիլվան, Աֆրիկայի և Ասիայի ժողովուրդների համերաշխության խորհրդի գլխավոր քարտուղար, գրող Յուսեֆ

էլ-Սիբային, Նոբելյան մրցանակի լաուրեատ, սովետական ակադեմիկոս Նիկոլայ Սեմյոնովը, կոմպոզիտոր Դմիտրի Շոստակովիչը և հարյուրավոր այլ մարդիկ, որոնց անունները լավ հայտնի են շատ երկրներում։

Կոնգրեսի նախապատրաստությունը լայն թափ է ընդունել մեր երկրում։ Ընդառաջելով խաղաղության կողմնակիցների բազմաթիվ ցանկություններին, Խաղաղության պաշտպանության սովետական կոմիտեն ստեղծեց «Խաղաղության ֆոնդ»։ «Խաղաղության շաբաթվա» օրերին և այժմ հարաճուն չափերով շարունակում են կամավոր մուծումներ կատարել այդ ֆոնդը։ Դա սովետական մարդկանց կողմից Խաղաղության Համաշխարհային Խորհրդի նախաձեռնության ջերմ պաշտպանության ցայտուն վկայություններից մեկն է։

Կասկած չկա, որ Ստոկհոլմի նոր ձայնը ի պաշտպանություն խաղաղության նույնպես ահեղ կհնչի ամբողջ աշխարհում։ Սովետական մարդիկ կոնգրեսի մասնակիցներին ջերմորեն ցանկանում են հաջողություն նրանց ազնիվ գործում, որի նպատակն է բոլոր խաղաղասեր ուժերի համախմբումը ատոմային պատերազմի սպառնալիքի դեմ։

---



# ԿԻՊՐՈՍ

(Տեղեկանք)

Կիպրոս կղզին գտնվում է Միջերկրական ծովի արևելյան մասում։ Կղզին ունի 9,250 քառ. կիլոմետր տերիտորիա, բնակչության թիվը հասնում է մոտ 520 հազարի, որի 80 տոկոսը հույներ են, 18 տոկոսը թուրքեր, իսկ մնացած երկու տոկոսը՝ անգլիացիներ, հայեր, արաբներ և այլն։

Կիպրոսը անգլիական գաղութ է, որին ղեկավարում է գեներալ նահանգապետը. մայրաքաղաքն է Նիկոզիան, որն ունի 40 հազարից ավելի բնակչություն։ Գլխավոր քաղաքներն են՝ Լիմասոլը, Պաֆոսը, Ֆամագուստան, Կիրենիան։

Կիպրոսն ունի մերձարևադարձային կլիմա, գեղեցիկ անտառածածկ լեռնաշխարհ։ Կղզու ընդերքը հարուստ է երկաթով, քրոմով, պղնձով, ասբեստով, գիպսով և հատկապես մարմարով։

Բազմադարյան հերոսական պայքարի պատմություն ունի Կիպրոսի ժողովուրդը։ 1517 թվականին Կիպրոսը նվաճում են թուրք օսմանները, որոնց տիրապետության տակ նա մնում է մոտ 300 տարի։

1878 թվականի հունիսին տխրահռչակ Բեռլինի կոնգրեսի նախօրյակին Թուրքիայի և Անգլիայի միջև կնքվեց գաղտնի համաձայնագիր, որով Կիպրոսը տրվեց Անգլիային, իսկ Անգլիան պարտավորվեց պաշտպանելու Թուրքիայի ասիական տիրապետությունները և Բեռլինի կոնգրեսում՝ Թուրքիայի շահերը։

Օտարերկրյա երկարամյա տիրապետության հետևանքով, Կիպրոսում արդյունաբերությունը թույլ է զարգացած։ Այնտեղ կան միայն տեքստիլ, ծխախոտի, գինու-կոնյակի, անտառանյութի մշակման մի քանի ձեռնարկություններ։ Երկրի հանքային հարստությունները առանց վերամշակման արտահանվում են Անգլիա։

Կիպրոսի համար շատ կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսությունը։ Այստեղ հիմնականում զբաղվում են ցորենի, գարու, տարեկանի, ծխախոտի, ցիտրուսային մի շարք կուլտուրաների մշակությամբ։

Կիպրոսը հռչակված է իր այգեգործությամբ։ Գյուղատնտեսության մեջ զգալի տեղ է գրավում մանր եղջերավոր անասնապահությունը։

Կիպրոսում մշակման ենթակա 250 հազար հեկտար հողի 80 տոկոսը պատկանում է անգլիական գաղութարարներին, եկեղեցուն և խոշոր առևտրականներին։

Կիպրոսն ունի թույլ զարգացած տրանսպորտ՝ ընդամենը 1.200 կիլոմետր ավտոճանապարհ։

Փողի միավորը կիպրոսյան ֆունտ ստերլինգն է, որը համարժեք է անգլիական ֆունտ ստերլինգին։



Անգլիական իմպերիալիստները հաշվի առնելով Կիպրոսի ռազմա-ստրատեգիական նշանակությունը, ձեռք են առնում բոլոր միջոցները, իրենց տիրապետությունը այնտեղ պահպանելու համար։ Նույնիսկ անգլիական բուրժուական թերթերը Կիպրոսին անվանել են «Անխորտակելի ավիակիր»։ Կղզին ենթարկված է միլիտարիզացիայի։ Կառուցված են ռազմական նշանակություն ունեցող ճանապարհներ, օդանավակայաններ, ռազմածովային բազաներ։ Վերջին ժամանակներս այստեղ են կենտրոնացվել մեծ քանակությամբ զինված ուժեր։ Այս առթիվ անգլիական «Օբսերվեր» թերթը գրում է, որ «ներկայումս կղզու ամեն մի 10 բնակչին ընկնում է մեկ անգլիական զինվոր»։

Իմպերիալիստական տերությունները Կիպրոսը դարձրել են ինչպես ՆԱՏՕ-ի, այնպես էլ Բաղդադի պակտի ռազմաօդային բազա։ Ավելին՝ անգլիական իմպերիալիստները կառչելով Կիպրոսից, նպատակ ունեն ճնշելու Արաբական Արևելքի ժողովուրդների ազգային ազատագրական պայքարը։

Կիպրոսը Եգիպտական ավանտյուրայի ժամանակ ծառայեց որպես ռազմական բազա, իսկ այժմ նա նույն դերն է կատարում Լիբանանի ժողովրդի ազատագրական պայքարը ճնշելու գործում։

Կիպրոսի նկատմամբ իր ագրեսիվ պլաններն ունի նաև ԱՄՆ-ը։ Դեռևս 1947 թվականին, նա Անգլիայի հետ բանակցություններ էր վարում Կիպրոսը 99 տարով իրեն հանձնելու համար, այն վերածելու ԱՄՆ-ի ռազմական բազայի։

Կիպրոսի ժողովուրդը բազմիցս ապստամբել է անգլիական գաղութարարների դեմ։ 1931 թվականին կղզու ամբողջ բնակչությունը ոտքի կանգնեց անգլիական իմպերիալիզմի դեմ, պահանջելով անկախություն տալ իրեն։

Այդ պայքարը շարունակվեց հետագա տարիներին և լայն ծավալ ստացավ հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։

1950 թվականի հունվարի 15—22-ը «Կիպրոսի ազգային ազատագրական կոմիտեն» արքեպիսկոպոս Մակարիոսի ղեկավարությամբ Կիպրոսում անցկացրեց հանրաքվե՝ կղզին Հունաստանին վերամիավորելու մասին։ Վերամիավորման օգտին քվեարկեց կղզու հույն բնակչության 95 տոկոսը։

Անգլիական գաղութարարները հույն և թուրք բնակչության մեջ թշնամություն սերմանելու նպատակով, կազմակերպեցին կղզու թուրք բնակչությանը, որպեսզի նրանք պահանջեին վերամիավորվել Թուրքիայի հետ։

1954 թվականի օգոստոսի 12-ին կղզում նորից բռնկվեց ապստամբություն, որը արյան մեջ խեղդեցին գաղութարարները։

Գաղութարարների դեմ պայքարի է դուրս եկել ոչ միայն կղզու հերոսական բանվոր դասակարգը, այլև գյուղացիությունը, ինտելիգենցիան, մանր առևտրականները, արհեստավորները, նույնիսկ 10—12 տարեկան դպրոցականները։

Կիպրոսի ժողովրդի հայրենասիրական շարժումը ղեկավարում է «Կիպրոսի առաջադիմական աշխա-



տանքային պարտիան» (ԱԿԵԼ), որի կորիզը հանդիսանում են կոմունիստները։

Այդ մեծ պայքարում իրենց դրական դերն են խաղացել Կանանց դեմոկրատական միությունը, Համակիպրոսյան պրոֆմիությունները և Երիտասարդական միությունը։

Կղզու բնակչությունը համառ կերպով իր պայքարը շարունակեց 1955—1956 թվականներին։ Կղզում ժողովրդի պայքարը թուլացնելու և նրան սարսափի մեջ պահելու համար 1956 թվականի մարտի 9-ին անգլիական գաղութարարները Կիպրոսի արքեպիսկոպոս Մակարիոսին և եպիսկոպոս Կիպրյանոսին աքսորեցին Սեյշելյան կղզիները (Հնդկական օվկիանոս), սակայն միջազգային հասարակայնության ճնշման տակ 1957 թվականի մայիսին Մակարիոսը ազատ արձակվեց։

Իրենց տիրապետությունը Կիպրոսում պահպանելու համար անգլիական գաղութարարները դիմեցին ավելի ստոր միջոցի։ Կիպրոսի նահանգապետ Խարտինգը և լորդ Ռեդկլիֆֆինը անկախ կղզու ժողովրդի ցանկությունից Անգլիայում մշակեցին Կիպրոսի կոնստիտուցիան։ Այդ կեղծ կոնստիտուցիան մերժվեց կղզու բնակչության մեծամասնության կողմից։

1956 թվականի մարտին Կիպրոս ժամանեց Անգլիայի գաղութների մինիստր Լեննոքս Բոյդը, որը արտակարգ դրություն մտցրեց կղզում և դիմեց մի շարք ռեպրեսիաների։ Այս անգամ ևս ոտքի կանգնեց կղզու բնակչությունը՝ «Հանուն անկախության» և

«Հունաստանին վերամիավորվելու» լոզունգներով։ Ինչպես հայտնի է միջազգային հասարակայնության պահանջով մոտ 4 անգամ ՄԱԿ-ը քննության առավ Կիպրոսի հարցը։ Սակայն ԱՄՆ-ի, Անգլիայի կառավարությունների ճնշմամբ Կիպրոսի հարցը մերժվեց։

Անարդյունք ավարտվեցին նաև 1955 թվականի Լոնդոնի անգլո-թուրք-հունական բանակցությունները։ Ամերիկյան իմպերիալիզմը հանդես եկավ իբրև միջնորդ՝ ՆԱՏՕ-ի երկրների միջև հակասությունները լուծելու համար։

Անգլիական կառավարությունը ձգնում էր ապացուցել, որ Կիպրոսն իր վաղեմի կղզին է, Թուրքիան ընդհակառակը՝ պահանջում է կղզին միացնել իրեն։

Պանթուրքիստները հայտարարում են, որ «Կիպրոսի գործը դա 20 միլիոն թուրքերի գործն է» կամ «Կիպրոսը դա թուրքական կղզի է»։

Իսկ Թուրքիայի պրեմիեր մինիստր Ադնան Մենդեբեսը հրապարակորեն հայտատարեց, որ «Կիպրոսը երբեք Հունաստանին չի տրվելու»։ Այդ առթիվ հունական «Կատիմերնի» թերթը գրել է. «Մեռավ թուրքական և հունական բարեկամությունը»։

Թուրքիայի և Հունաստանի միջև սրվեցին հարաբերությունները։ Թուրքիայի մի շարք քաղաքներում սկսվեց հույն ազգաբնակչության ջարդեր, անխնա կերպով ոչնչացնում էին նրանց ունեցվածքը, որի վնասը կազմեց 300 միլիոն դոլար։

Անգլիական իմպերիալիստները իրենց տիրապետությունը կղզում երկարացնելու համար ցանկացան



շեղել հույն բնակչությանը իր ազատագրական պայքարից, կազմակերպեցին ազգամիջյան կռիվներ։

Այս առթիվ Անգլիայի գաղութների մինիստր Լեննոքսը հայտարարել է՝ «Կիպրոսի հարցը թող իրենք հույները և թուրքերը լուծեն»։ Ահա թե ինչու մինիստրի այդ հայտարարությունը հանգեցրեց 1958 թվականի հունիսի 8-ին սկսված արյունահեղություններին։

Վեց շաբաթից ավել է ինչ Կիպրոսում ազգամիջյան կռիվներ են տեղի ունենում կղզու թուրք և հույն բնակչության միջև։ Անգլիական իշխանությունների թողտվությամբ կղզու թուրք բնակիչները արյունահեղ ընդհարումներ են կազմակերպում հույների դեմ։

Ինչպես հայտնի է դարձել, անգլիական գաղութարարները չեն ցանկանում ապահովել կղզու հույն բնակչության անվտանգությունը։

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա նա պահանջում է, որ ոչ մի երկիր չմիջամտի կղզու ներքին գործերին։ Կիպրոսի հարցը պետք է վճռեն իրենք կիպրոսցիները։

Սովետական Միության այս անշահախնդիր և արդարացի պահանջը ջերմ պաշտպանություն է գտել աշխարհի խաղաղասեր ժողովուրդների կողմից, որոնք պահանջում են անհապաղ դադարեցնել արյունահեղությունը Կիպրոսում։

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՕԳՈՍՏՈՍ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Նորարարների և առաջավորների փորձը բոլորին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 237—258, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Արդյունաբերության մեջ տեխնիկական պրոգրեսի արագացումը, *ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956։*

Առաջավոր փորձի արմատավորումը կարևորագույն խնդիր է, *«Ս. Հ»-ի 1958 թվականի մայիսի 14-ի առաջնորդողը։*

## 2. Քիմիական արդյունաբերության զարգացումը համաժողովրդական գործ է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի



ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թ. մայիսի 9-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում բնակչության պահանջմունքները և ժողովրդական տնտեսության կարիքները բավարարելու համար քիմիական արդյունաբերության և առանձնապես սինթետիկ նյութերի ու դրանցից պատրաստված առարկաների արտադրության զարգացումն արագացնելու մասին, տպագրված *«Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 10-ի և 11-ի համարներում։*

Քիմիական արդյունաբերության արագ զարգացումը ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության անհետաձգելի խնդիրն է, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 31-ի համարում։*

Քիմիական արդյունաբերության հետագա զարգացման համար, *«Ս. Հ.-ի 1958 թվականի մայիսի 13-ի առաջնորդողը։*

## 3. Բնակչության բարեկեցության հետագա բարձրացման համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը պարտադիր հանձնումները և ՄՏ կայանների աշխատանքների դիմաց բնավարձը վերացնելու մասին, *գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգի, գների ու պայմանների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 20-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում պարտադիր հանձնումները և ՄՏ կայանների աշխատանքների դիմաց բնավարձը վերացնելու, գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգի, գների և պայմանների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 *թվականի հունիսի 21-ի և 22-ի համարներում։*

Սովետական ժողովրդի շահերի, կոմունիզմի կառուցման շահերի համար, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 24-ի համարում։*

## 4. Հացահատիկային կուլտուրաների բերքը հավաքենք ժամանակին և առանց կորուստի

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսական ամբողջ արտադրության հիմքն է, *ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956 թ.։*

Հսկայական կարևորություն ունեցող որոշում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 4-ի համարում։*

Կազմ ու պատրաստ դիմավորել բերքահավաքը. *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 14-ի առաջնորդողը։*

Սեղմ ժամկետում անցկացնենք հացահատիկային



կուլտուրաների բերքահավաքը, *զրույց տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 13-րդ համարում։*

## 5. Հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ստավրոպոլի երկրամասի կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների, սովխոզների նորոգման-տեխնիկական կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների դիմումը ՍՍՌՄ Գյուղատընտեսության բոլոր աշխատողներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 11-ի համարում։*

Հացահատիկային կուլտուրաների անջատ բերքահավաքի տնտեսական էֆեկտիվությունը, *առանձին գիրք, ՀՍՍՌ Գյուղմինիստրության հրատարակություն, 1958։*

## 6. Ավելի շատ հյութալի կեր հանրային անասուններին

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, *ՍՄԿՊ 20-րդ համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1956։*

Կազմակերպված անցկացնել խոտհունձն ու կերի սիլոսացումը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 12-ի առաջնորդողը։*

## 7. Ավելի շատ բամբակ մեր երկրին





ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության աշխատողների սոցիալիստական պարտավորությունները, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մարտի 16-ի համարում։*

Ինչի համար են պայքարում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները *(թվեր և փաստեր), տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 12-րդ համարում։*

Բամբակի բարձր բերքի համար, *հոդված տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 18-ի համարում։*

## 8. Շինարարի օրը

## 9. ՍՍՌՄ օդային Նավատորմի օրը

## 10. Անտառատի օրը

## 11. Սոցիալիստական լագերի երկրների միասնության ամրապնդման համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների դեկլարացիան, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 27-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի 7-րդ համագումարում 1958 թվականի հունիսի 3-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հունիսի 7-ի համարում։*



*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ գերմանիայի Սոցիալիստական միասնական պարտիայի V համագումարում, 1958 թվականի հուլիսի 11-ին, տպագրված «Ս. Հ»-ի 1958 թվականի հուլիսի 13-ի համարում։*

*Կոմյունիկե Չեխոսլովակիայի Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի առաջին քարտուղար և Չեխոսլովակյան ռեսպուբլիկայի պրեզիդենտ Անտոնին Նովոտնու ՍՍՌՄ-ում գտնվելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հուլիսի 15-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ